Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 16 (94)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ՅԵՐԵՎԱՆ—1940

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՑԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 16 (94)



«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐՁՐ ԴԻՍՑԻՊԼԻՆԱՅԻ ՅԵՎ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հունիսի 26-ի հրամանագիրը մեր ժողովրդական տնտեսության համար խոշոր և առանձնակի նշանակություն ունի յերկրորդ իմպերիալիստական պատերազմի շրջանում: Կապիտալիստական պետություններն ամեն ջանք գործ են դընում ծավալելու պատերազմը: Կապիտալիստական յերկրների արդյունաբերությունը, տրանսպորտը, գյուղատնտեսությունը և յերկրի տնտեսության մնացած բոլոր ճյուղերն ամբողջապես հարմարեցրած են*

պատերազմի շահերին: Արտադրում են մեծ քանակությամբ սպառազինք և զինամթերքներ:

Սպառազինման արտադրության ծավալն ու տեմպերն ակնառու կերպով ասում են այն մասին, վոր որ ըստ որե աճում և ուժեղանում է իմպերիալիստական գիշատիչների կողմից Սովետական Միության վրա հարձակվելու վտանգը:

Մեր սոցիալիստական հայրենիքը պետք է պատրաստ լինի ամեն տեսակի անսպասելիքների:

Միջազգային ներկա բարդ պայմանները պահանջում են ՍՍՌՄ-ի ժողովրդից՝ ամենուրեք ուժեղացնել մեր յերկրի ռազմական ուժը, ել ավելի ուժեղացնել մեր յերկրի պաշտպանությունը, Կարմիր Բանակը, Ռազմա-Ծովային ու Օդային նավատորմը, մեր յերկրի տնտեսական դրությունը: Մեր յերկիրը չի կարող պակաս պատրաստված լինել, քան կապիտալիստական յերկրները, մեր յերկիրը պետք է մի քանի անգամ ուժեղ լինի, քան կա ներկայումս: Տնտեսական և ռազմական հզորության ուժեղացումըն արտահայտվում է մեծաքանակ պրոդուկցիայի և զինամթերքների արտադրությամբ:



Յերկրի տնտեսական և ռազմական հզորությունն ել ավելի ուժեղացնելու գործում մեծ դեր են կատարում աշխատանքի բարձր արտադրողականությունն ու աշխատանքի բարձր դիսցիպլինան: Դրա համար ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հունիսի 26-ի հրամանագիրն արգելում է հիմնարկ-ձեռնարկների բանվոր-ծառայողներին աշխատանքից ինքնակամ հեռանալը, մտցնում է 8-ժամյա բանվորական որ ու 7-որյա բանվորական շաբաթ: Այս միջոցառումը պետք է մեծ չափով ավելացնի արդյունաբերական պրոդուկցիայի և սպառազինքի արտադրությունը:

Մեր սովետական հայրենասեր ժողովուրդը մեծ խանդավառությամբ հավանություն տվեց Գերագույն Սովետի հրամանագրին: Բանվորները և ծառայողները խորը համոզված են, վոր իրագործելով Գերագույն Սովետի Նախագահության հրամանագիրը, ՍՍՌՄ-ը տնտեսապես և ռազմականապես կդարձնեն ել ավելի հզոր: ՍՍՌՄ-ն ել ավելի ամրացնել ու հզորացնել կարելի յե միայն ստեղծելով աշխատանքային բարձր դիսցիպլինա, անխնա

պայքար մղելով լոդրերի, պրոգուլշչիկների և արտադրությունը լքողների դեմ:

Լենինը և Ստալինը պրոլետարական դիկտատուրայի գլխավոր խնդիրներից մեկն առաջադրում եյին աշխատանքային նոր դիսցիպլինայի կառուցումը, անողոք պայքար նրանց դեմ, ովքեր խուսափում են աշխատանքից, թաքնվում են ուրիշի ստվերում և ապրում են ուրիշի հաշվին, իսկ այդպիսիները դեռ կան մեր արդյունաբերության մեջ, թե քաղաքում, թե գյուղում, վորոնք վոչ միայն իրենց անձնվիրությամբ որինակ չեն ծառայում, այլ և լքում են արտադրության գործը:

Ընկեր Ստալինը միշտ մեզ սովորեցնում է, թե վորքան խոշոր նշանակություն ունի աշխատանքի բարձր դիսցիպլինան և աշխատանքի արտադրողականության բարձրացումը սոցիալիզմի կառուցման գործում: Ստախանովականների Համամիութենական 1-ին խորհրդակցությունում, ընկ. Ստալինն ասել է.

«Ինչո՞ւ սոցիալիզմը կարող է հաղթել և պետք է հաղթի և անպայման կհաղթի տնտեսության կապիտալիստական սիստեմին: Վորովհետև նա կարող է աշխատանքի ավելի բարձր որինակներ, աշխատանքի



ավելի բարձր արտադրողականություն տալ, քան տնտեսության կապիտալիստական սիստեմը: Վորովհետև նա կարող է ավելի շատ արդյունքներ տալ հասարակությանը և կարող է հասարակությանը դարձնել ավելի հարուստ, քան տնտեսության կապիտալիստական սիստեմը»:

Հարվածային կոլխոզնիկների համագումարում ընկեր Ստալինը հետևյալն է ասել.

«Յերբեմն ասում են. քանի վոր սոցիալիզմ է, ել ի՞նչ կարիք կա աշխատելու: Աշխատում եյինք առաջ, աշխատում ենք այժմ, մի՞թե ժամանակը չէ աշխատելուց դադարել: Այսպիսի խոսքերը հիմնովին սխալ են, ընկերներ: Դա լոդրերի փիլիսոփայությունն է և վոչ թե ազնիվ աշխատողների: Սոցիալիզմն ամենևին չի ժխտում աշխատանքը: Ընդհակառակը, սոցիալիզմը կառուցվում է աշխատանքի վրա: Սոցիալիզմն ու աշխատանքն անբաժանելի յեն միմյանցից: Մեր մեծ ուսուցիչ Լենինն ասել է. «ով չի աշխատում, նա չի ուտում»:

Ի՞նչ է նշանակում այդ, ո՞ւմ դեմ են ուղղված Լենինի այդ խոսքերը: Շահագործողների դեմ, նրանց դեմ, ովքեր իրենք չեն աշխատում, այլ հարկադրում են աշխատել ուրիշներին և հարստանում են ուրիշների հաշվին: Ե՞լ ում դեմ: Նրանց դեմ, ովքեր իրենք ծուլություն են անում և ուզում են շահվել ուրիշների հաշվին»:

Սոցիալիզմի պայմաններում «աշխատավոր մարդը,— ասում է ընկեր Ստալինը,— պատիվ ունի: Այստեղ նա աշխատում է վոչ թե շահագործողների համար, այլ իրեն համար, իր դասակարգի համար, հասարակության համար: Այստեղ աշխատավոր մարդը չի կարող իրեն լքված ու մենակ զգալ, ընդհակառակը, մեզ մոտ աշխատավոր մարդն իրեն զգում է իր յերկրի ազատ քաղաքացի, մի տեսակ՝ հասարակական գործիչ:

Յեվ յեթե նա լավ է աշխատում և հասարակությանը տալիս է այն, ինչ վոր կարող է տալ,— նա աշխատանքի հերոս է, նա փառքով է պսակվում»:



Ընկեր Լենինը պահանջում է անխնա պայքար նրանց դեմ, ովքեր խուսափում են աշխատանքից, ապրում են գլուխ պահելով և չեն զբաղվում հասարակական արտադրության կազմակերպման ու ամրացման գործով: Լենինը «Ինչպե՞ս կազմակերպել մրցակցությունը» հոդվածում գրում է.

«Հարուստների, խաբեբաների, ձրիակերների, խուլիգանների վերաբերմամբ կիրառվող հաշվառման ու վերահսկողության ընթացքում, բանվորական ու գյուղացիական մասսաների միայն կամավոր և բարեխիղճ, հեղափոխական խանդավառությամբ կատարած գործակցությունը կարող է հաղթահարել անիծյալ կապիտալիստական հասարակության այդ մնացուկներին, մարդկության այդ տականքներին, անհուսալի կերպով նեխված ու կոռացած այդ անդամներին, այդ վարակը, ժանտախտը, խոցը, վորը վորպես ժառանգություն է թողել կապիտալիզմը սոցիալիզմին»:

Նույն հոդվածում, մի ուրիշ տեղ գրում է.

«Որ յուրաքանչյուրը հաց ունենա, որ բոլորն էլ ամուր կոշիկներ և չպատառոտված հագուստ ունենան, տաք բնակարան ունենան, աշխատեն բարեխղճորեն, որ ոչ մի սրիկա (այդ թվում նաև աշխատանքից խուսափողները) ազատ չզբոսնի, այլ նստի բանտում կամ ամենածանր հարկադրական աշխատանքների պատիժը կրի, որպեսզի սոցիալիզմի կանոններից և օրենքներից շեղված ոչ մի հարուստ չկարողանա խուսափել սրիկայի վիճակից, մի վիճակ, որն արդարացիորեն պետք է հարուստի վիճակը լինի: «Ով չի աշխատում, նա թող չուտի»—ահա սոցիալիզմի գործնական պատվիրանը»:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագիրը՝ 8-ժամյա բանվորական օրվան և 7-օրյա բանվորական շաբաթվան անցնելու և աշխատանքից ինքնակամ հեռանալու մասին, ամբողջապես բխում է Լենինի-Ստալինի աշխատանքային դիսցիպլինայի, արտադրողականության բարձրացման, արդյունաբերության պրոդուկցիայի ավելացման և յերկրի տնտե-



սապես ու ռազմականապես հզոր դարձնելու ուսմունքից:

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումը հատուկ ուշադրություն դարձրեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի այդ կարևորագույն հրամանագրի իրագործմանը: Պլենումը նշեց, որ պարտիական կազմակերպությունները անհրաժեշտ ուշադրություն չեն դարձրել այդ կարևորագույն հրամանագրի իրագործմանը և անհրաժեշտ հակահարված չեն տվել պրոգուլշչիկներին, նրանց հովանավորողներին: Այդ անուշադրության հետևանքով, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագրից հետո, հուլիս ամսում, Հայաստանի հիմնարկձեռնարկներում տեղի յեն ունեցել բավականի թվով պրոգուլներ:

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումն իր որոշումներում հատուկ ցուցմունք տվեց պարտիական կազմակերպություններին՝ ձեռք առնել ամենակտրուկ միջոցառումները՝ պրոգուլշչիկների, նրանց հովանավորողների ու դատական օրգանների կողմից յեղած լիբերալ վերաբերմունքի դեմ:

Հունիս ամսին 18 ձեռնարկություններում

յեղել են 501 պրոգուլ, իսկ հուլիս ամսին՝ 330։

Պրոգուլներն ըստ ձեռնարկությունների, հետևյալն են՝

| Հիմնարկ-ձեռնարկներ | Պրոգուլների թիվը | |
|---|---|---|
| | հունիս | հուլիս |
| 1. Ղափանի պղնձի կոմբինատ | 20 | 13 |
| 2. Լենտեքստիլ կոմբինատ | 120 | 29 |
| 3. Առաջին կարի գործարան | 57 | 26 |
| 4. Յերևանի կոշիկի գործարան | 27 | 16 |
| 5. Կաշեգործարան | 17 | 7 |
| 6. «Արարատ» գործարան | 13 | 3 |
| 7. Մեքենագործարան | 14 | 11 |
| 8. Կաուչուկշին | 12 | 4 |
| 9. Կոմբինատ ՍԿ «Սովպրեն» | 50 | 36 |
| 10. Մուլխի գործարան | 5 | 5 |
| 11. Բաղչինտրեստ | 34 | 18 |
| 12. Մոլոտովի անվան մանածագործարան | 97 | 74 |

Գերագույն Սովետի Նախագահության հունիսի 26-ի հրամանագրից հետո, մինչև օգոստոսի 15-ը դատական օրգանների կողմից դատապարտված են 963 պրոգուլշչիկ-



ներ, աշխատանքից ինքնակամ հեռացման համար դատապարտված են 88 հոգի, 2 հոգի յել դատապարտված են պրոգուլշչիկներին հովանավորելու համար։

Պրոգուլշչիկների, աշխատանքային դիսցիպլինան խախտողների և արտադրությունը լքողների դեմ պետք է պայքար ծավալվի ամբողջ ֆրոնտով։

ՍԿ «Սովպրեն» կոմբինատում օգոստոսի 1—25-ը տեղի յե ունեցել 78 պրոգուլ, «Հայմարմար» գործարանում՝ 10, Ալավերդու պղնձագործարանում՝ 9, Կաուչուկշինում՝ 17, Ղափանի պղնձի կոմբինատում՝ 10, Արթիկտուֆում՝ 8 և այլն։ Այս փաստերն ասում են այն մասին, վոր գործարանի դիրեկտորները, պարտկազմակերպությունները ու պրոֆ. միությունները դեռ վճռողական պայքար չեն տանում աշխատանքի դիսցիպլինան խախտողների դեմ, իսկ շատ գործարաններում պրոգուլշչիկների դեմ պայքարը հանձնարարված է յերկրորդական աշխատողներին։ Շատ հիմնարկ-ձեռնարկների ղեկավարների՝ աշխատանքային դիսցիպլինայով չզբաղվելու հետևանքով, պրոգուլշչիկները մնում են անպատիժ։ Օրինակ՝ «Լեպսե» գործարանում՝ Մոմջյան Միսակը—կոմսոմոլի անդամ,

գործարանում աշխատել է մեկ տարի, հուլիսի մեկին նա ինքնակամ թողնում է աշխատանքը և պատասխանատվության չի ենթարկվում: Ղամբարյան Սեմյոնը, տոկար, հուլիսի 20-ին թողնում է աշխատանքը 2 ժամ: Նույն Ղամբարյանն օգոստոսի 6—7-ին աշխատանքի չի գալիս: Դիրեկտորը մինչև վերջերս նրան պատասխանատվության չի կանչում և չի հետաքրքրվում նրա աշխատանքի չգալու պատճառների մասին:

Գաբեկով Իվանը—ձուլարանի ցեխի բանվոր, կոմսոմոլի անդամ, աշխատում է գործարանում 4 ամիս. Հուլիսի 23-ին աշխատանքից ուշացել է 50 րոպե, իսկ գործը դատարան է ուղարկված միայն օգոստոսի 7-ին, այսինքն՝ 15 օր անցնելուց հետո:

Գորբունով Ալեքսանդրը— կոչեգար, հուլիսի 25-ին աշխատանքի դուրս չի գալիս, և նրա գործը երկար ժամանակ դատարան չի ուղարկվում:

Շատ տեղեր էլ հիմնարկ-ձեռնարկների ադմինիստրացիան ինքն է նպաստում պրոգուլշչիկներին:

Ձեթ-Օճառ կոմբինատի դիրեկտոր Խաչատրյանը հուլիս ամսում 14 աշխատակիցների արձակուրդ է տվել, ամեն մի աշխա-



տակցին հասանելիք արձակուրդից 20 օր ավելի. լաբորանտկա Հակոբյանին տվել է 41 օր, հաշվապահուհի Ցեղխադարյանին՝ 57 օր, վորից 40 օր իր հաշվին:

Մեքենաշինական գործարանի դիրեկտոր Սարգսյանը միայն հուլիս ամսում արձակուրդ է տվել 20 բանվոր-ծառայողների, իրենց հաշվին 1—3 օր:

Փոխանակ մոբիլիզացիայի ենթարկելու աշխատավորությանը, և ամեն մի ժամ օգտագործել արտադրողականության բարձրացման համար, շատ դիրեկտորներ տալով հասանելիքից ավելի արձակուրդ, օրինականացնում են պրոգուլները:

Պրոգուլի մի խայտառակ դեպք տեղի ունեցավ Ժողտնտհաշվարչությունում: Աշխատակից Վարդանյան Գարեգինը գալիս է աշխատանքի, բայց ըստ երևույթին՝ տրամադրություն չի ունենում աշխատելու, թողնում է գործը և աշխատանքի ժամին գնում բաղնիք, աշխատանքի յե վերադառնում միայն 2 ժամից հետո: Դատարանը նրան դատապարտեց 4 ամիս հարկադիր աշխատանքի:

Ագիտատորները պետք է կոնկրետ փաստերով մերկացնեն աշխատանքի դասալիքներին, ուրիշի հաշվին ապրողներին և մո-

րիլլվացիայի յենթարկեն ազնիվ աշխատողներին՝ բարձրացնելու աշխատանքային դիսցիպլինան: Պրոգուլշչիկների շարքում կան նաև պարտիականներ և կոմյերիտականներ, վորոնք առաջավոր լինելու փոխարեն, հանդես են գալիս գործը լքողի դերում: Օրինակ. Ունիվերմագի պարտկազմակերպության անդամ Բուրաստան Ամիրյանը թողնում է աշխատանքը և գնում է հերթ կանգնում, իսկ պահեստապետ, պարտիայի անդամ Գրիգոր Գալյանը գալիս է աշխատանքի վայրում, քնում: Նման մարդիկ, առաջավոր պարտիայի անդամներ լինել չեն կարող և հեռացվում են պարտիայի շարքերից: Պրոգուլշչիկների, գործալիքների և նրանց հովանավորողների դեմ պայքարը՝ դա մեր յերկիրը տնտեսապես և ռազմապես հզոր դարձնելու հիմնական խնդիրներից մեկն է:

ՄՏԿ-ներում, սովխոզներում և կոլխոզներում նույնպես պետք է ստեղծել յերկաթյա դիսցիպլինա: Անբավարար է կիրառվում ՍՍՌՄ Գերագույն Սովետի հրամանագիրը՝ աշխատանքից ինքնակամ հեռացող տրակտորիստների, կոմբայնավարների նկատմամբ: ՄՏԿ-ներում ու սովխոզներում աշխատանքը լքողները, չվողները և



աշխատանքային դիսցիպլինան խախտողները շատ տեղերում մնում են անպատիժ: Օրինակ. Ապարանի շրջանում կոմբայնավարներ՝ Մարտիրոսյանը, Ասատրյանը, Հայրապետյանն ուշացել են աշխատանքից 2—4 ժամ:

Ղուկասյանի շրջանում տրակտորիստ Սարգսյանն ինքնակամ թողել է աշխատանքը: Տրակտորիստ Ռաշոյանն ուշացել է աշխատանքից: Տրակտորիստներն աշխատանքի յեն դուրս գալիս մեծ ուշացումով:

Հոկտեմբերյանի շրջանում տրակտորիստ Մանուկյանը 3 օրով, առանց թույլտվության, բացակայել է աշխատանքից, իսկ Աղիկյանը մի որ պրոգուլ է արել:

Այս փաստերը խոսում են աշխատանքային թույլ դիսցիպլինայի մասին:

Բանվոր-ծառայողներից վոմանք օգտվելով այն բանից, վոր մեզ մոտ չկա գործազրկություն և ամեն մի գործարան կարիք ունի բանվորական ուժի, ամեն մի գործից ուշացող, գործից հեռացող, անմիջապես աշխատանք է գտնում մի ուրիշ գործարանում, և անտեսելով սոցիալիստական արտադրության շահերը, զանազան զարտուղի

ճանապարհներով փախչում և թաղնվում են աշխատանքից, վորպեսզի աշխատավարձ ստանան ու չաշխատեն: Ահա մի քանի որինակներ:

1) Ազիզյան Սուրենը—1938 թվից աշխատել է Յերևանի Քաղսովետում, վորպես վարտավիր, 14/1-39 թ. մինչև 5/1-40 թ.՝ Յերևանի հրդեհաշեջ խմբում՝ հրդեհաշեջ, վորտեղից հեռացված է հարբեցողության համար: Ազիզյան Սուրենը 7/3—40 թ. ընդունվում է աշխատանքի ՍԿ «Սովպրեն»-ում, վորպես սևագործ բանվոր, հեռացվում է վորպես անպետքի: 11/5—40 թ. աշխատանքի յե ընդունվում 1-ին կարի գործարանում, վորպես հրդեհաշեջ: 13/7—40 թ. ուշանում է աշխատանքից 40 րոպե:

23/7-40 թ. Յերևանի Սպանդարյան ռայոնի 4-րդ շրջանի ժողդատարանը դատապարտեց նրան 3-ամսյա հարկադիր աշխատանքի, աշխատավարձի 15%-ի պահումով:

26/7—2/8—40 թ. աշխատանքի դուրս չեկավ, պատճառաբանելով, թե քիչ աշխատավարձ է ստանում:

10/8-40 թ. Սպանդարյան ռայոնի 4-րդ ժողդատարանը նրան դատապարտեց 4 ամսվա կալանքի:

2) Մարգարյան Իգմիր Հովհաննեսի—



կոմյերիտական 1940 թ. մարտ ամսից: 20/4-37 թ. մինչև 1/7-39 թ. աշխատել է Հայարդսովետի տպարանում, վորպես գրաշար: 1/7-39 թ.—15/8-39 թ. աշխատել է Պետհրատի № 2 տպարանում, վորպես 2-րդ կարգի գրաշար, ազատվում է աշխատանքից պրոգուլի պատճառով: 21/8-39 թ. ընդունվում է Յերքաղտրամվայ, վորպես կոնդուկտոր: 23/10—39 թ. ազատվում է աշխատանքից պրոգուլի համար. 14/9-39 թվին ընդունվում է Մոլոտովյան ռայոնի 4-րդ ժողդատարանը, վորպես ցրիչ: 7/2-40 թ. ազատվում է աշխատանքից պրոգուլի համար: 13/2-40 թ. ընդունվում է Յերքաղտրամվայ, վորպես կոնդուկտոր: 17/6-40 թվին ազատվում է աշխատանքից պրոգուլի համար: 26/6-40 թ. Յերքաղտրամվայի վարչության գնահատու և կոնֆլիկտային հանձնաժողովի վորոշմամբ վերականգնվում է աշխատանքում: 2/7-40 թ. աշխատանքի դուրս չի գալիս, 20/7-40 թ. Մոլոտովյան ժողդատարանի վորոշմամբ դատապարտվում է 4 ամսվա հարկադիր աշխատանքի, աշխատավարձի 15%-ի պահումով:

Յերքաղտրամվայի վարչության սկզբնական ԼԿՅԵՄ կազմակերպությունն անհրա-

ժեչտ չի համարել զբաղվել Մարգարյանի հարցով։

3) Մկրտչյան Համբարձում Արշակի— պարտ. թեկնածու 1939 թվից. 10/8–38 թ. աշխատել է Հայֆիլհարմոնիայում, որպես տնտեսվար, ազատված է աշխատանքից 3/2–39 թ., № 51 հրամանով, գողության համար։ 28/3–39 թ. աշխատել է Առևտրի տեխնիկումում, որպես տնտեսվար—աշխատանքից հեռացված է 21/5–39 թվին, աշխատանքը չղեկավարելու և 2800 ռ. պակասորդ տալու համար, գործը հանձնված է դատարան։ 29/5–39 թ. աշխատում է «Կուլտուրա» արտելում, որպես էքսպեդիտոր։ 23/6–39 թ. ազատված է աշխատանքը պրավալի տալու համար։ 27/6–39 թվին աշխատում է Հիդրոմետվարչությունում, որպես տնտեսվար, 26/9–39 թ. ազատված է աշխատանքից № 55 հրամանով, պրոգուլի համար։ 5/5–40 թ. աշխատում է Սպանդարյան շրջանի սան. սեկտորում, որպես ֆին. տեսուչ, 9/5–40 թ. հեռացված է պրոգուլի համար։ 14/6–40 թ. աշխատում է Արզնի հանքային ջրի գործարանում, որպես պատ. կատարող, 3/7–40 թ. հանված է՝ աշխատանքին անկար լինելու պատճառով։ 16/7–40 թ. աշխատում է



Գլավտախարարբիտում, որպես էքսպեդիտոր, 18/7–40 թ. մեկ օր պրոգուլ է տալիս, 19/7–40 թ. գործը հանձնվում է Սպանդարյան շրջանի 3–րդ ժողդատարան։

4) Մարիկյան Կլիպտան Համբարձումի— 2/6—1939 թվին մտնում է աշխատանքի Ալավերդու հացի գործարան, որպես շոֆերի օգնական, 1/8–39 թ. ազատվում է աշխատանքից՝ հաստիքների կրճատման կապակցությամբ, 4/8–39 թ. մտնում է աշխատանքի Ալավերդու Լեսպրոմխոզը, որպես շոֆերի օգնական, 5/8–39 թ. ազատվում է աշխատանքից բանակ կանչվելու համար, բանակը նրան չի ընդունում, որպես հիվանդի, սակայն Մարիկյանը չի վերադառնում նույն տեղն աշխատանքի։ 25/12–39 թ. մտնում է Կառուչուկչին, որպես ավտոգարաժի պահակ, 19/2–40 թ. տեղափոխվում է 4–րդ աշխատամասը, որպես սևագործ բանվոր։ 14/4–40 թ. ազատվում է աշխատանքից՝ պրոգուլի համար։ 21/4–40 թ. ընդունվում է աշխատանքի կաշեգործարանի ապրանքային պահեստում, 19/5–40 թ., որպես իրեն չարդարացնող, տեղափոխում են նախապատրաստական ցեխ, որպես բանվորի, 28/6–40 թ. աշխատանքի դուրս չի գալիս, որի

համար Ստալինյան շրջանի 1-ին ժողդատարանը դատապարտում է 3 ամսվա հարկադիր աշխատանքի, աշխատավարձի 15%-ի պահումով: Անգամ դատարանի վորոշումից հետո Մարիկյանը շարունակում է լոդրություն անել. ողոստոսի առաջին դեկադի պլանը նա կատարել է 54,3%-ով: Այն հարցին, թե ինչո՞ւ լավ չի աշխատում, և չի կատարում պլանը, Մարիկյանը պատասխանում է. «Չեք ուզում, ազատեցեք ինձ աշխատանքից»:

Այսպիսիներն են, վորոնք լքում են աշխատանքը: Սրանք են, վոր չվելով մի գործարանից մյուսը, լքում են աշխատանքը:

Մեր ագիտատորները չպետք է բավարարվեն Գերագույն Սովետի հրամանագիրն ընթերցելով միայն. բոլշևիկյան ագիտացիան պետք է հարձակողական լինի, յերևան հանի ամեն մի պրոգուլշչիկի, ամեն մի աշխատանքից խուսափողի և մերկացնի նրանց մասսաների առաջ, վորպես վնասակար մարդկանց: Պետք է յերևան հանվեն և մերկացվեն նաև նրանք, ովքեր լիբերալ վերաբերմունք են ցույց տալիս և հովանավորում են պրոգուլշչիկներին ու արտադրության լքողներին:



# ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՅԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ԱՆԳԼԻԱ

Դեռ նախքան պատերազմի սկսվելը բուրժուազիան հարձակում էր գործում բանվորների աշխատանքային օրվա և աշխատանքի պայմանների վրա: Պատերազմի ժամանակ այդ հարձակումն ուժեղացավ, հատկապես այն ժամանակվանից, յերբ կառավարության կազմի մեջ մտան լեյբորիստները: Տրեդյունիոնների լիդեր, այժմ աշխատանքի մինիստր, Բեվինին ընձեռվեցին արտակարգ լիազորություններ, վորոնք նրան իրավունք են տալիս ուզած մարդուն հրամայել կատարելու ամեն մի

աշխատանք, վորը կպահանջի կառավարությունը: Բեվինն իրավունք ունի բանվորներին հարկադրաբար փոխադրելու ռազմական գործարանները: Կապիտալիստական շահագործողների դեմ գործադուլ անելու իրավունքը խլված է բանվորներից:

Աշխատանքային օրը յերկարացված է չլսված չափերով: Համարյա հաջորդ օրն իսկ այն բանից հետո, յերբ լեյբորիստ Մորրիսոնը մատակարարման մինիստր նշանակվեց, նա հրամայեց բոլոր պետական ռազմական գործարաններին աշխատել շաբաթական յոթն օր գիշեր-ցերեկ չարունակ, մինչև հատուկ կարգադրություն կարվի: Այժմ պետական ռազմական գործարանների մեծ մասն աշխատում է 2 հերթի, 12-ական ժամ:

Ահա լեյբորիստական «Դեյլի հերալդ» թերթից վերցված մի նկարագրություն, վորի մեջ հավանության տոնով պատմըվում է այն մասին, թե ինչպես ռազմական գործարանների բանվորները սկսել են աշխատել կիրակի օրերը. «Ռազմական գործարանների հարյուր հազարավոր բանվորներ կիրակի առավոտյան գնացին աշխատանքի: Միդլենդսի ռայոնի ռազմական գործարաններից մեկում 13 հազար տղա-



մարդ և կին ձեռք-ձեռքի աշխատում եյին առավոտյան ժամը 8-ից մինչև յերեկոյան ժամը 7-30: Յերբ նրանք վերջացրին, աշխատանքի անցավ մյուս հերթափոխը՝ նույնպես 13 հազար տղամարդկանցից և կանանցից բաղկացած, և դազգյահների առջև կանգնեց աշխատելու մինչև առավոտյան ժամը 7-30»: Այնուհետև թղթակիցը գրում է. «Յես խոսեցի խոշոր զինանոցում գրաղված մի քանի տղամարդկանց և աղջիկների հետ: Նրանք բոլորն էլ, բացառությամբ 16 տարեկանից ցածր տղաների, աշխատում են այժմ շաբաթական 7 օր 12-ժամյա հերթափոխերով»:

Լեյբորիստական «Տրիբյուն» շաբաթաթերթի թղթակիցը՝ Կովենտրին, այցելելով ռազմական արդյունաբերության մի խոշոր կենտրոն, գրում է. «Ռազմական գործարանների մեծ մասում մտցված է 12-ժամյա աշխատանքային օր, ցերեկային և գիշերային հերթափոխերով»:

Դժվար չէ կռահել, թե այդ բանն ինչպիսի կործանարար ազդեցություն կունենա բանվորների առողջության վրա: Կոմպարտիայի . օրգան «Դեյլի ուորկեր» թերթը բերում է ռազմական գործարանի մի բանվորի հետևյալ խոսքերը. «Կանայք

հիվանդանում են ամեն օր: Նրանք տառապում են ներվային հյուծումով: Նրանք տնից բացակայում են օրական 14 ժամ»:

Ուժեղանում է յերեխաների շահագործումը: Այդ տեսակետից բնորոշ են հետևյալ փաստերը: Բանվորների յերկարատև պայքարից հետո 1937 թվին հրատարակվեց մի օրենք, վորը 16 տարեկանից ցածր պատանիների աշխատանքային շաբաթը կրճատում եր և հասցնում 48 ժամվա: Այդ օրենքով նախատեսված եր պատանիների աշխատանքային շաբաթը իջեցնել մինչև 44 ժամվա՝ սկսած 1939 թվի հուլիս ամսից: Բայց բանից դուրս յեկավ, վոր «արդյունաբերությունը բավականաչափ հարմարեցված չեր աշխատանքային շաբաթվա այդ կրճատմանը, յերբ սկսվեց պատերազմը»: Թույլատրություն տրվեց 16 տարեկանից ցածր պատանիներին զբաղեցնել շաբաթական 47–48 ժամ, և հարյուրավոր մեքենաշինական գործարաններ այդպես էլ անում են: Կան նաև դպրոցականներին գյուղատնտեսության մեջ օգտագործելու պլաններ: 16 տարեկանից բարձր յերիտասարդների համար աշխատանքային շաբաթը շատ ավելի յերկար է լինելու,



յեթե դատենք ըստ անցյալ պատերազմի, այն կհասնի 70 և ավելի ժամվա: Մանչեստերի և շրջակա ռայոնի մեքենաշինական ձեռնարկություններում աշակերտների աշխատանքի պայմանների մասին այս տարվա սկզբին հրատարակված հաշվետվությունը ցույց տվեց, վոր աշակերտներն աշխատում են զարհուրելի պայմաններում: Մի ավիացիոն գործարանում տղաները դեռևս այն ժամանակ (հունվարի վերջերին) աշխատում եյին բոլոր հանգստի օրերին ամբողջ տասը շաբաթ շարունակ:

Այժմ աշխատանքի մինիստր Բեվինի պահանջով վերացված են հանգստի բոլոր կիրակիներն ու տոնական օրերը:

1914–1918 թ. թ. առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ աշխատանքի պաշտպանության վերաբերյալ օրենսդրությունը պարզապես վերացվեց, և դրա հետևանքով դժբախտ պատահարների թիվը, վորը 1914 թվին կազմում եր յուրաքանչյուր հազար բանվորին ամսական 100, 1915 թվին հասավ 292-ի: Գիշերային հերթափոխերում , յուրաքանչյուր 1000 բանվորից 500 հոգի ամեն ամիս վորևե վնասվածք եյին ստանում: Այժմ, լուսաքողարկման նպատակով ձեռնարկություն-

ներում լուսավորությունը թույլ լինելու հետևանքով, պետք է սպասել, որ յերկար աշխատանքային օրը և աշխատանքի տենդոտ տեմպերը կհանգեն արտադրության մեջ դժբախտ պատահարների թվի հսկայական ավելացման:

Սակայն արտադրանքի ավելացումը վերաբերում է լոկ ռազմական արդյունաբերությանը և եքսպորտային ճյուղերին: Իսկ աշխատավորների համար սպառման միջոցներ արտադրելու տեսակետից սաստիկ կրճատելու վորոշակի քաղաքականություն է հետապնդվում: Մի բանվորական հետազոտական կազմակերպություն հաշվել է, վոր արդեն իսկ 1940 թվի հունվարին պատերազմի սկզբից գների ավելանալու հետևանքով մանրածախ առևտրի շրջանառությունը պակասել է ավելի քան 17 տոկոսով, նախորդ տարվա համեմատությամբ: Այլ խոսքով, բանվորները զգալիորեն ավելի քիչ են գնում, քան մի տարի առաջ, այն բանի հետևանքով, վոր մթերքների և լայն սպառման ապրանքների գները խիստ աճել են:

Կապիտալիստները և նրանց լեյբորիստ արբանյակները բարձրաձայն բղավում են զոհաբերության անհրաժեշտության մա-



սին,— ինքնին հասկանալի յե, հանուն իմպերիալիստների շահերի փրկության: Բայց այն ժամանակ, մինչ օրենքը բանվորներին հարկադրում է տալու տասացիորեն իրենց արյուն-քրտինքը, կապիտալիստները շարունակում են հսկայական շահույթներ վաստակել:

Այսպես, օրինակ, մեքենաշինական արդյունաբերության մեջ հենց միայն 181 ֆիրմաներ, վորոնք 1929 թվին ունեյին 29,8 միլիոն ֆունտ ստերլինգի շահույթ, 1938 թվին ստացան 44,6 միլիոն ֆունտ ստերլինգի շահույթ: Յերկաթուղային մագնատների համար ապահովված է տարեկան 40 միլիոն ֆունտ ստերլինգի շահույթ: Ածխահանքերի տերերը 1938 թվին վաստակեցին 13,6 միլիոն ֆունտ՝ 1935 թվի 5,2 միլիոն ֆունտի դիմաց: «Դենլոպ րաբբեր կոմպանի» ֆիրման (կաուչուկ) 1939 թվին ստացավ ավելի քան 4,25 միլիոն ֆունտ շահույթ՝ 1938 թվի 2,25 միլիոնի դիմաց, «Իմպերիել կեմիկլ ինդաստրիս» ֆիրման (քիմիական տրեստ) 1939 թվին ունեցավ 13,7 միլիոն ֆունտ շահույթ՝ 1938 թվի 9 միլիոն ֆունտի դիմաց և այլն:

Ըստ մամուլի հաշվետվությունների,

1057 անգլիական ֆիրմաներ 1939 թվին ստացան 216.725 հազար ֆունտ ստերլինգի շահույթ՝ 1938 թվի 199.139 հազար ֆունտ ստերլինգի դիմաց։

Անգլիական բանվորների արտադրանքի յուրաքանչյուր ավելացում նշանակում է նույնպիսի և ե՛լ ավելի բարձր վաստակ մի բուռը կապիտալիստների համար։

## ՖՐԱՆՍԻԱ

Պատերազմն սկսվելուց շատ առաջ ֆրանսիական բուրժուազիան, հարձակում գործելով բանվոր դասակարգի վրա, քայլ առ քայլ վոչնչացնում էր ֆրանսիական բանվորների սոցիալական նվաճումները, ավելացնում էր աշխատանքային օրը, իջեցնում աշխատավարձը և աշխատավորներին ծանրաբեռնում նոր հարկերով։

Դալադյեյի կառավարությունը, վորն իշխանության գլուխն անցավ 1938 թվի ապրիլին, արդեն իսկ մայիս ամսին անցկացրեց 40-ժամյա աշխատանքային շաբաթի վերաբերյալ օրենքի «ավելի ճկուն» կիրառում, վորը ձեռնարկատերերի համար հեշտացնում էր այն խախտելու հնարավորությունը։ Միաժամանակ արժեքազրկվեց



ֆրանկը, իսկ ուղղակի և անուղղակի հարկերը ավելացան 8%-ով։

1938 թվի օգոստոսի 30-ի արտակարգ դեկրետով կառավարությունը ձեռնարկատերերին իրավունք տվեց աշխատանքի լրացուցիչ ժամեր սահմանել այն բոլոր ձեռնարկություններում, վորոնք սպասարկում էին պաշտպանության կարիքներին և պետական կարիքներին։

Մյունխենի համաձայնագրի կնքումից հետո կառավարության ստացած արտակարգ լիազորությունները օգտագործվեցին բանվոր դասակարգի դեմ հետագա հարձակման համար։ Ձեռնարկատերերին թույլատրվեց աշխատանքային շաբաթն ավելացնել անհրաժեշտության դեպքում։ «Բանվորական օրվա ընդհանուր տևողությունը,— ասում էր 1938 թվի դեկտեմբերի 12-ի դեկրետը,— չպետք է անցնի օրական 9 ժամից և շաբաթական 48 ժամից, բացի այն դեպքերից, յերբ գոյություն ունեցող հրահանգները նախատեսում են ավելի յերկարատև աշխատանքային ժամանակ կամ յերբ ձեռնարկատերերը ստանում են աշխատանքի տեսչի հատուկ թույլտվությունը»։

Յեթե առաջ, հավաքական պայմանա-

զրերին համապատասխան, Ֆրանսիական բանվորն արտաժամյա աշխատանքի համար 25% հավելում էր ստանում, սակայն, բստ նոյեմբերի 12-ի դեկրետի, այդ հավելումը չէր կարող անցնել 10%-ից:

Աշխատանքային օրվա ավելացմանը և արտաժամյա աշխատանքի վարձատրության իջեցմանը զուգընթաց մացվեց ազգաբնակչության բոլոր յեկամուտները, այդ թվում բանվորների աշխատավարձի և ծառայողների ռոճիկի արտակարգ յերկտակոսային հարկում: Բարձրացվեցին փոստային և հեռախոսային տարիֆները, սուրճի, շաքարի, բենզինի, ծխախոտի, գինու և այլ ապրանքների ակցիզները:

Շարունակելով սոցիալական օրենքների լիկվիդացիայի քաղաքականությունը, Ֆրանսիական բուրժուազիան իրեն խնդիր առաջադրեց ռազմական արդյունաբերության անման ծախսերի ամբողջ ծանրությունը դնել բանվոր դասակարգի և աշխատավորական մասսաների վրա: Ավելին չառ շահագրգռված լինելով իր շահույթների աճումով, քան թե յերկրի պաշտպանունակության իրական ամրապնդումով, Ֆրանսիայի բուրժուազիան, ավելացնելով աշխատանքային օրը և շարունակելով



վատթարացնել աշխատանքի պայմանները, ձգտում էր լոկ բարձրացնել ձեռնարկությունների յեկամտաբերությունը: 1939 թվի մարտի 20-ին կառավարության հրատարակած արտակարգ դեկրետները նախատեսնում էին 60-ժամյա աշխատանքային շաբաթ մտցնել ազգային պաշտպանության կարիքների համար աշխատող պետական և մասնավոր ձեռնարկություններում (մետաղաձուլման ձեռնարկությունները, էլեկտրոեներգիայի արտադրությունն ու բաշխումը, կամուրջների, ճանապարհների շինարարությունը և այլն): Այդ դեկրետը իրավունք էր տալիս, շաբաթական 60 ժամից դուրս, լրացուցիչ ժամեր էլ մտցնել այդ ձեռնարկություններում: Միաժամանակ դեկրետն իջեցրեց արտաժամյա աշխատանքի վարձատրությունը:

1939 թվի ապրիլի 22-ին հրատարակված արտակարգ դեկրետները աշխատանքային շաբաթվա 45-ժամյա տևողություն սահմանեցին ինչպես կոմունալ տնտեսության ձեռնարկություններում, այնպես էլ մասնավոր ձեռնարկություններում, առանց աշխատավարձի վորևէ ավելացման: Արդեն իսկ 1939 թվի ամռանը Ֆրանսիական բանվոր դասակարգի մեկ յերրորդական մասից

հարկերը, վորոնք 1938 թվին կազմում եյին ազգաբնակչության մեկ շնչին 1310 ֆրանկ՝ 1939 թվին բարձրացան 1710 ֆրանկի, 1940 թվին՝ 2100 ֆրանկի:

Այս ամենն ընդհանուր առմամբ հանգեց այն բանին, վոր ֆրանսիական բանվոր դասակարգը, վորը աշխատում է շաբաթական 60—70 ժամ, այսինքն մեկ և կես անգամ ավելի, քան մինչև պատերազմ, ավելի քիչ աշխատավարձ է ստանում նախապատերազմյան ժամանակաշրջանի հետ համեմատած:

Ձգտելով ձեռնարկատերերի համար ստեղծել «իրենց» բանվորների անսահմանափակ շահագործման իրավունք, Ֆրանսիայի կառավարությունը 1939 թվի մարտի 21-ի դեկրետով արգելեց պաշտպանության կարիքների համար աշխատող ձեռնարկությունների բանվորներին գնալ ուրիշ գործարանները: 1939 թվի օգոստոսի 25-ի օրենքը ռազմական պատվերներ կատարող ձեռնարկությունների միլիտարիզացիայի կարգ սահմանեց: «Միլիտարիզացիայի ենթարկված անձնակազմը,— ասված է այդ դեկրետում,—պարտավոր է մնալ իր պոստում, բացառությամբ այլ աշխատանքի վերաբերյալ հատուկ ցուցմունքներ-



րի»: Յեթե հաշվի առնենք այն բանը, վոր ֆրանսիական ձեռնարկությունների ճնշող մասը կարող է դասվել ռազմական պատվերներ կատարող ձեռնարկությունների շարքը, ապա բանից դուրս է գալիս, վոր ֆրանսիական բանվոր դասակարգի վիթխարի մի մասը դրված է զինվորական իշխանությունների վերահսկողության տակ և հանձնված է ձեռնարկատերերի քմահաճույքին:

Վերջապես, 1939 թվի սեպտեմբերի 6-ի օրենքով վերացվեց շաբաթական մեկ օրվա հանգիստը պաշտպանության համար աշխատող պետական և մասնավոր ձեռնարկություններում:

Այս ամենը խոսում է այն մասին, վոր Ֆրանսիայի կառավարությունը, դեռևս նախապատերազմյան ժամանակաշրջանում ավելացնելով աշխատանքային օրը և կրճատելով աշխատավարձը, պատերազմի ժամանակ ամբողջապես միլիտարիզացիայի ենթարկեց ֆրանսիական բանվոր դասակարգի նվաճած սոցիալական օրենսդրությունը և բանվորներին դարձրեց ֆինանսական կապիտալի ստրուկներ:

